ուածական տուրքերը շատ անգամ կրկինն էին պետական տուրքին եւ գիւղացիները չէին կրնար վճարել: Նախընթաց տարիներու ընթացքին, հարկահաւաք յանձնախումբերու անդամները սպաննուեցան կատղած գիւղացիներուն կողմէ, որոնց արջառը եւ հունձքերը գրաւուեցան իշխանութեան կողմէ: Կալինին լրացնելով իր զեկոյցը, առաջարկեց խիստ վարուիլ տեղական կոմիտէներուն հետ, որոնք չարաչար կը գործածեն իրենց իշխանութիւնը, տարապայման տուրքեր դնելով գիւղացիներուն վրայ:

Խարքովի «Փրավտա»ն եւ Օտէսայի «Իզվէստիա»ն կը գրեն թէ գիւղացիներուն մէջ ծանր խլրտումներ կը տիրեն Օտէսայի, Խարքովի եւ Փէնսայի մէջ, ուր պատերազմական վիճակ հրատարակուած է: Մոսկուայի «Տնտեսական կեանք» թերթը դիտել կուտայ թէ գիւղացիները կը դժկամակին վճարել արմտիքի տուրքը, ինչ որ լուրջ դժուարութեան կը մատնէ խորհրդային իշխանութեան արմտիքի առեւտուրը:

Յառաջ.— կալինին կրնար միեւնոյն յստակատեսութեամբ լուսաբանել Արագածի ստորոտը, գիւղական խորհուրդի քարտուղար ախրահիւչակ Մանուկ Խուշոյեանի սպանութիւնը, որ դաշնակցական «տերրոր»ի վերագրուեցաւ Երեւանի նենգամիտ վարիչներուն կողմէ:

## Անգլիացի լրտես մը Գերմանիոյ հաշւոյն

Ֆրանս. ոստիկանութիւնը ձերբակալեց Վիվիըն Սթրանտըրս անուն Անգլիացի մը, որ Գերմանիոյ հաշւոյն լրտեսութիւն կ'ընէր Ֆրանսայի մէջ: Սթրանտըրս պատերազմի ատեն ծառայած է անգլիական օդային տորմիղին մէջ, Զինադադարէն վերջ ալ Պերլին ղրկուած էր, Վէրսայլի դաշնագրին համաձայն հակակշռելու համար գերման օդանաւի ճարտարարուեստը: 1924ին իր այս պաշտօնը վերջ գտած ըլլալով, Սթրանտըրս առեւտրական օդանաւերու ներկայացուցիչ եղաւ եւ սկսաւ աշխատիլ Լոնտոնի, Փարիզի եւ Պերլինի մէջ: Տարի մը առաջ, գերման գործակալներ, Փարիզի մէջ յաջողեցան կաշառել զինքը եւ իբր լրտես վարձել Գերմանիոյ հաշւոյն: Սթրանտըրսի պաշտօնն էր Ֆրանսացիներու օդանաւային նոր գիւտերը հաղորդել գերման սպայակոյտին:

Վերջին անգամ օդանաւի ցուցահանդէսին, Սթրանտըրսի շարժումները կասկածելի նկատուելով ձերբակալուեցաւ: Անգլիացին խոստովանութիւններ ըրաւ: Այժմ բանտն է:

## Թուրք պատանիներու զինուոր. կրթութիւնը

Էնկիւրիի կառավարութիւնը անցեալ նոյեմբերին որոշած էր զինուորական ծառայութիւնը պարտաւորիչ դարձնել Թուրք երկրորդական վարժարաններուն մէջ, որպէսզի Թուրք երիտասարդները աւելի կանուխէն կարգապահութեան վարժուին եւ զօրանոցներու մէջ զինուորական ծառայութեան շրջանը զեղչուի: Այս նորութիւնը շուտով պիտի գործադրուի: Կրթական տնօրէնութիւնը այս մասին հրահանգներ կը պատրաստէ վարժարաններու տնօրէնութեանց ղրկելու համար:

Մասնաւոր մարզարաններ պիտի հաստատուին քաղաքներու շուրջ եւ Թուրք աշակերտները նշանառութեան դասեր պիտի առնեն, նոյնիսկ ռազմափորձեր պիտի կատարեն: Ասկէ զատ զինուորական պատմութեան դասընթացք մըն ալ պիտի հաստատուի:

## Անթելով խօսակցութիւն

Անգլիոյ եւ Ամերիկայի բնակիչները ասկէ վերջ անթել հեռաձայնով պիտի կրնան ուղղակի խօսակցիլ իրարու հետ: Անթել հեռաձայնի բացումը պիտի կատարուի մօտ օրէն եւ առաջին անգամ պիտի տեսակցին Անգլիոյ Թագաւորն ու Միացեալ Նահանգներու Նախագահը, առաջինը ուղղակի իր պալատէն, իսկ երկրորդը Սպիտակ Տունէն:

Լոնտոնի Թղթատարական ընդհ. տնօրէնը կը յայտարարէ թէ բաւական է Նիւ Եորքի անթելի մէկ թիւը ուզել, անմիջապէս հաղորդակցութեան մէջ մտնելու համար: Երեք վայրկեանի խօսակցութիւն մը պիտի արժէ 15 ոսկի, այսինքն 1830 ֆրանք:

## Անատօլուի երկաթուղին կը գնեն

Թուրք կառավարութիւնը ատենէ մը ի վեր կը բանակցէր Անատօլուի երկաթուղիի ընկերութեան պատուիրակներուն հետ, այս գիծը գնելու համար: Գտնուած է արդէն համաձայնութեան գետին մը, վճարուելիք գումարին մասին եւ խնդրին վերջնական կարգադրութիւնը յանձնուած է ելմտական գործավարութեան: Գնումի պայմանները բացարձակապէս գաղտնի կը պահուին:

## Նոր կը սպաննեն դրոշմաթուղթի համար

Սուէզի ջրանցքին ձախ եզերքին վրայ, Փորթ-Սայիտի ճիշդ դիմացը Դեկտեմբեր 22ին բացումը կատարուեցաւ Նոր քաղաքի մը, որուն անունը դրուեցաւ Փորթ-Ֆուատ, Եգիպտոսի ներկայ Թագաւորին անունով: Պաշտօնական բացումը կատարեց նոյն ինքն Թագաւորը, առաջին քարը դնելով Նոր Նաւահանգիստի քաղաքապետարանին: Այս առթիւ նոր դրոշմաթուղթեր հրապարակ հանուած էին, միայն երկու օր գործածուելու համար: Դրոշմաթուղթի սիրահարներն ու վաճառականները, գիշերը մինչեւ լոյս սպասեցին Նամակատան առջեւ, առտուն կանուխ գնելու համար անոնցմէ: Բազման պահուն սպասողներուն միջեւ կռիւ ծագեցաւ եւ բազմաթիւ մարդիկ վիրաւորուեցան, հինգ հոգի ալ սպաննուեցաւ: Դրոշմաթուղթերը, որ կէս ոսկի արժէք ունէին, Նամակատան բացումէն հինգ վայրկեան վերջ 15-18 ոսկիի բարձրացան:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՌՈՒՍԻՈՅ մէջ 18 տարիէ ի վեր մարդահամար չէր կատարուած: Վերջին մարդահամարին համաձայն, որ նոր լրացաւ, ամբողջ Ռուսիոյ բնակչութիւնն է 145 միլիոն 500,000:

ՀԻՆ ՔՍԱՆ ՖՐԱՆՔՆՈՑՆԵՐԸ դիւրութեամբ կեղծուած ըլլալով, Պանք տը Ֆրանսը ժամանակէ մը ի վեր հրապարակէն կը քաշէ զանոնք: Մօտ օրէն նոր 20 ֆրանքնոցներ հրապարակ պիտի հանուին:

ԻՏԱԼՆԻԳԵՐՄԱՆ ՆՈՐ ԴԱՇՆԱԳԻՐԸ ստորագրուեցաւ դեկտ. 29ին: Հռոմի մէջ, Մուսօլինիի ներկայութեամբ:

Դաշնագրին տեւողութիւնը 10 տարի է:

Պերլինի օտար դիւանագիտական շրջանակները վախ կը յայտնեն թէ դաշնագիրը գէշ ազդեցութիւն պիտի ունենայ ֆրանքեւ-գերման բանակցութեանց վրայ:



ՍԷՆ ՇԱՄՕՆԻ Տարօն Տուրուբերանի Հայրենակցական Միութիւնը կը ծանուցանէ թէ ճամբու դժուարութեան պատճառաւ բաժնուած է Սէնթ Էթիէնի համանուն հայրենակց. միութենէն նոյ. 21ին եւ ընտրած էր իր առանձին վարչութիւնը:



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռուի Սաըեամանցի Սաստուր Արուշեան կամ Գալաճեան: Սուրիոյ ճէպէլի որբանոցէն ղրկուած է Ֆրանսա Ամերիկացիներու միջոցով: Տեղեկացնել իր հօրեղբօրորդւոյն, Krikor H. Kaladjianի, Cantine Valette, Cruas-Ardèche.

— Կը փնտռուի Ներսէս Աֆեանը, Պրուսայի Նէնիճէ գիւղացի, որ տասը տարի առաջ Ֆրանսա մեկնած ըլլալով հինգ տարիէ ի վեր որեւէ լուր չկայ իր մասին: Տեղեկացնել. Puzant Biribanianի, Café «Ujna Bulgaria» Haskovo (Bulgarie).

— Գէորգ Սողբոյեան կը փնտռէ իր մեծ հայրը Գասպար Սողբոյեան եւ եղբայրը Վարդան, Վանի Ալճավազ գաւառի Նորշուէչուղ գիւղէն, որոնք պատերազմէն առաջ Պրազիլիոյ Ռիօկրանտ-Տէսուլա քաղաքը հաստատուած էին: Իմացնել «Յառաջ»ի կամ C. Dilénian Montana (Suisse).

— Մալաթիացի, այժմ Տրամա գտնուող Արուսեակ Եաղուպեան կը փնտռէ եղբայրը 22 տարեկան Յակոբ Թէրզի Եաղուպօղլու (հօր անուն Նազարէթ, մօր անուն՝ Աննա եւ քոյրերը՝ Եսթեր, 40 տարեկան, Մառի՝ 28 տարեկան), որոնց Փարիզ ըլլալը կը կարծուի: Տեղեկացնել Տրամայի Թաղական Խորհուրդին, Ephorie de l'Eglise Arménienne, Drama. (Grèce)




Le Gérant : H. TEURNIER

Imp. MASSIS 208bis, Rue Lafayette Paris(10e)